Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 22 (41)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1948

*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 22 (41)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945




**ԳՐ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի քարտուղար

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ 25 ՏԱՐԻՆ

Լրացավ Հայաստանում սովետական իշխանության հաստատման 25 տարին։ Բազմահենդ. դարերի պատմության ընթացքում ժողովրդի համար քառորդ դարը աննշան ժամանակամիջոց է, սակայն Հայաստանում սովետական իշխանության գոյության 25 տարիները իրենց արդյունքներով խոր դարաշրջանային նշանակություն ունեն։ Այդ փոքրիկ ժամանակամիջոցը հայ ժողովրդին բերեց այն, ինչի մասին նա երազում էր և ինչի համար նա պայքա-

րում էր իր պատմության հազարամյակների ընթացքում՝ իր պետականության վերածնունդ, անվտանգ ու ազատ կյանք, ճկունամիտ խելացի ու կուլտուրայի չտեսնված ծաղկում:

Հայ ժողովուրդը մեծ ցնծությամբ է նշում իր համար նշանակալից տարեդարձը և յուրաքանչյուր ոք ցանկանում է համաժողովրդական բերկրանքի այս օրերին հետադարձ հայացք գցել անցած ճանապարհի վրա և իմանալ, թե ինչ գնով են ձեռք բերված այդ հաջողությունները:

Ծանր է եղել հայ ժողովրդի ճակատագիրը, անվերջ արյունոտ հետքերով է նշվել նրա բազմադարյա պատմությունը: Երկու աշխարհների՝ Արևմուտքի և Արևելքի բախման կետում, պատմական մեծ ճանապարհների խաչաձևման վայրում ընկած հայ հողը շարունակ ենթարկվել է արյունալի արշավանքների, կռվախնձոր է եղել զանազան նվաճողների համար: Այդ հողի վրայով որպես մոլեգնող փոթորիկ



անցել են ասորեստանցիներն ու բաբելացիները, հին պարսիկները և միդիացիները, հռոմայեցիները և բյուզանդացիները, արաբներն ու մոնղոլները, օսմանցիները և սելջուկները, թուրքերն ու պարսիկները: Այդ նվաճողներից շատերն անհետացել են երկրի երեսից, նրանք նույնիսկ որպես ժողովուրդ դադարել են գոյություն ունենալուց:

Հայ ժողովուրդը այժմ էլ կա և գոյություն ունի, ապրելով իր վերածննդի ոսկեդարը, որովհետև նա դարերի ընթացքում արիաբար ու քաջաբար պաշտպանել է իր ազատությունն ու անկախությունը, խնամքով պահպանել ու զարգացրել իր բարձր կուլտուրան, իր մայրենի լեզուն:

Իր պետականության վերածննդի համար հայ ժողովրդի մղած պայքարի բնորոշ գիծը եղել է անհաշտությունը դեպի նվաճողները: Այդ պայքարը ժամանակ առ ժամանակ դարձել է առանձնապես խիստ ցասումնալի և կատաղի, որովհետև նվաճողները բերում էին կործանիչ

ճնշում. մի կողմից զրկում էին ազատությունից և ապահովությունից, իսկ մյուս կողմից ձգտում էին հայ ժողովրդի միջին դասով փաթաթել իրենց ցածր կուլտուրան և ազգությունը, որովհետև օսմանցի, թուրք, պարսիկ նվաճողները կանգնած էին զարգացման ավելի ցածր մակարդակի վրա, քան նրանց գերադանց ուժերով նվաճված հայ ժողովուրդը:

Հայ ժողովրդի ազատագրական պայքարը 19-րդ դարում ավելի կենդանի և կազմակերպված բնույթ է ստանում: Ուրվագծվում են այդ պայքարի երկու ուղղություններ. դրանցից մեկը կողմնորոշվում է ռուս ժողովրդի, նրա ռևոլյուցիոն-դեմոկրատական շրջանների հետ մերձենալու կողմը: Մեծ լուսավորիչ դեմոկրատներ Խաչատուր Աբովյանի և Միքայել Նալբանդյանի գլխավորած այդ շարժումը հենվում էր Հայաստանի առաջադեմ ինտելիգենցիայի և աշխատավոր գյուղացիության վրա: Անմիջականորեն կապված լինելով ռուսական ռևո-



լյուցիոն դեմոկրատների հետ, այդ խումբը պրոպագանդա էր մղում Ռուսաստանի հետ մերձենալու օգտին:

Հայ ժողովրդի ազգային-ազատագրական պայքարի երկրորդ ուղղությունն ընթանում էր դեպի արևմտյան-եվրոպական բուրժուական շրջանները կողմնորոշվելու ուղիով, հենարան ունենալով հայ բուրժուազիան:

Անցյալ դարի վերջում Անդրկովկասում սոցիալ-դեմոկրատական բանվորական շարժման ամրապնդման կապակցությամբ՝ դեպի Ռուսաստան կողմնորոշվող առաջին ուղղության գլուխ է կանգնում սոցիալ-դեմոկրատական բանվորական (բոլշևիկների) պարտիան:

Այդ շարժման անմիջական կազմակերպիչը և ղեկավարը հանդիսանում է ռուսական ժողովրդի առաջնորդ և ուսուցիչ ընկեր Ստալինը և նրա մերձավորագույն զինակիցները Սուրեն Սպանդարյանը, Ստեփան Շահումյանը և Անաստաս Միկոյանը:

Երկրորդ, դեպի Արևմուտք կողմնորոշվող ուղղությունը նույնպես ձևավորվում է ու դառնում բուրժուական — նացիոնալիստական «դաշնակցության» պարագլխանը, որի առաջին շարքերն ու գաղափարախոսներն էին Զավարյանը, Ահարոնյանը:

Այդ ժամանակներից հայ ժողովրդի ազատագրության համար Հայաստանի բոլշևիկների ամբողջ գործունեությունը ընթանում էր «դաշնակցություն» պարտիայի դեմ անհաշտ պայքար մղելու և այդ պարտիայի հակաժողովրդական էությունը մերկացնելու նշանաբանով, մի պարտիա, որը ձգտում էր հայ ժողովրդին տանել ո՛չ թե դեպի ազատագրություն, այլ անխուսափելի կործանում, որ անհերքելիորեն ապացուցված է պատմության ամբողջ ընթացքով: Այսօր մենք արդեն կարող ենք և պարտավոր ենք հանրագումարի բերել այդ երկու ուղղությունների պայքարի արդյունքները:

Դեպի Արևմտյան Եվրոպայի իմպերիալիստական շրջանների դաշնակային քաղաքականությունը կողմնորոշվող և ժողովրդական լայն մասսաներից կտրված գործող դաշնակների պարտիան անթիվ-անհամար աղետներ բերեց հայ ժողովրդին: Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո առաջին իսկ ամիսներին, երբ երիտասարդ Սովետական Ռուսաստանը շրջապատված էր արտաքին ու ներքին բազմաթիվ թշնամիներով, գերմանացիները, օգտվելով Սովետական Ռուսաստանի ժամանակավոր դժվարություններից, ներխուժեցին Ուկրաինա և Անդրկովկաս: Նրանց սվինների օգնությամբ Անդրկովկասում առեղծվեցին դաշնակների, մենշևիկների և մուսավաթականների կոնտրռևոլյուցիոն կառավարությունները: 1918-ից մինչև 1920 թ. թ. շրջանում Հայաստանում իշխանության ղեկը մոտ պահելով, դաշնակները, հավատարիմ իրենց բնությանը, խաղալիք էին գերմանական, անգլիական և ֆրանսիական իմպերիալիստների ձեռքին:

Լակեյաբար կատարելով իրենց տերերի կամքը, նրանք իրագործում

էին արյունալի տեռորի քաղաքականություն, ընդհանուր կատաստրոֆի հասցրին ռեսպուբլիկայի տնտեսությունը, հայ ժողովրդին հասցրին ֆիզիկական ոչնչացման դուռը: Բավական է ասել, որ 1919 թվին Հայաստանի բնակչության յուրաքանչյուր հազար մարդուն ծնվում էր 8,7, իսկ մեռնում էր 204,2 մարդ, այսինքն բնակչության նվազումը հասնում էր 195,5 մարդու յուրաքանչյուր հազար հոգուց: Օգտվելով Հայաստանի անօգնական դրությունից, թուրքական զորքերը զավթեցին Հայաստանի տերիտորիայի զգալի մասը՝ Կարս, Արդահան, Սարիղամիշ և Կաղզվան քաղաքներով:

Այլևս ի վիճակի չլինելով հանդուրժելու դաշնակների տիրապետության մղձավանջը, Հայաստանի աշխատավորները, կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ապստամբության դրոշ բարձրացրին և օգնության հասած Կարմիր Բանակի օժանդակությամբ թոթափեցին դաշնակների լուծը և 1920 թվի նոյեմբե-



րի 29-ին սովետական իշխանություն հաստատեցին Հայաստանում:

Ժողովրդի կողմից Հայաստանի սահմաններից վտարված և արտասահմանում գտնվող դաշնակները այս 25 տարիների ընթացքում շարունակում էին անվերջ դավեր նյութել Սովետական Հայաստանի դեմ և իրենց հակասովետական կատաղի պայքարում դիմեցին մինչև բացահայտ դավաճանության:

«... Դաշնակները դրանով իրենց դատապարտեցին խայտառակության ու կործանման, բաժանելով, ինչպես ցույց տվեց պրոլետարական ռևոլյուցիայի փորձը, բուրժուազիայի, լինի այդ ռուսական, հայկական, վրացական, թուրքական, ուկրաինական և որևէ այլ բուրժուազիա, բոլոր և ամեն տեսակ գործակալների ճակատագիրը» (Վ. Մոլոտով):

Գերմանական զավթիչների դեմ սովետական ժողովրդի մղած Հայրենական Մեծ պատերազմի ժամանակ դաշնակները գտնվում էին ֆաշիստների լագերում:

Այս է դաշնակիցների միանկության ուղին:

Բոլշևիկների պարտիան հայ ժողովրդի ճակատագիրը կապելով ռուս ժողովրդի ռևոլյուցիոն շարժման և Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հետ, Հայաստանի աշխատավորական մասսաներին ազատագրեց բուրժուական ու կալվածատիրական շահագործումից, վերածնեց նրա պետականությունը, ծաղկեցրեց նրա էկոնոմիկան ու կուլտուրան:

Քսանհինգ տարի առաջ Հայաստանում հաստատված սովետական իշխանությունը կարողացավ մեծ հաջողությունների հասնել միայն Լենինի և Ստալինի ազգային իմաստուն քաղաքականությունը կենսագործելու շնորհիվ: Երկրում տիրում էր տնտեսական փլուզում, անդրկովկասյան ժողովուրդների միջև գոյություն ուներ ազգային հակամարտություն և թշնամանքի մթնոլորտ, որ երբեմն հասնում էր արյունահեղ ընդհարումների, որոնք արդյունք էին Անդրկովկասի բուրժուական-



նացիոնալիստական կառավարությունների քաղաքականության: Այդ պայմաններում ազգային քաղաքականության միակ ճիշտ մարմնավորումը Անդրկովկասյան Ֆեդերացիայի ստեղծումն էր: Անդրկովկասի սովետական ռեսպուբլիկաների միավորման հենց այդ ձևը հնարավորություն տվեց կարճ ժամկետում վերացնելու Անդրկովկասի ժողովուրդների միջև եղած ազգային թշնամանքը, իսկական բարեկամական, եղբայրական փոխհարաբերություններ ստեղծելու Հայաստանի, Վրաստանի, Ադրբեջանի աշխատավորության միջև:

Անդրկովկասյան Ֆեդերացիան ապահովեց ուժերի ու միջոցների հավասարաչափ բաշխումը անդրկովկասյան ռեսպուբլիկաների միջև: Տնտեսական փոխադարձ օգնությունը համեմատաբար կարճ ժամանակամիջոցում վերածնեց Հայաստանի ռեսպուբլիկան, չտեսնված [illegible] հասցրեց նրա էկոնոմիկան ու տնտեսությունը, նրան կանգնեցնելով Սովետական Միության մյուս ռեսպուբ-

լիկաների հետ միասին շարքում: Անդրկովկասյան Ֆեդերացիան պատմական դեր խաղաց ֆեդերատիվ ռեսպուբլիկաներից յուրաքանչյուրի, առանձին վերցրած սոցիալական ինքնուրույնության ամրապնդման գործում և պայմաններ նախապատրաստեց 1936 թվին Ստալինյան Մեծ Կոնստիտուցիայի ընդունելու համար, որն ապահովեց, որ Հայկական Սովետական Ռեսպուբլիկան Սովետական Միության մեջ մտներ միութենական ռեսպուբլիկայի իրավունքներով:

Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականությունն օգնեց արագ բուժելու վերքերը և վերացնելու երկրի տնտեսական փլուզումը, որն առաջ էր եկել դաշնակների հանցագործ տիրապետության շրջանում Հայաստանի տերիտորիայում տեղի ունեցած անվերջ պատերազմներից, որոնք տնտեսական ավերածություն էին հասցրել երկրին:

Միության կառավարության կողմից Հայաստանին ցույց տրված օգնությունը հնարավորություն տվեց



լայն վերականգնում կատարելու ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության, արդյունաբերության և կուլտուրական շինարարության ասպարեզում: Բոլշևիկյան խոշոր աշխատանքների շնորհիվ Սովետական Հայաստանի 25-ամյակին Հայաստանում ոռոգելի հողերի տարածությունը եռապատկվել է. դա հնարավորություն տվեց ինտենսիվացնելու գյուղատնտեսությունը և բարձրացնելու նրա եկամտաբերությունը՝ խաղողագործությունը, պտղաբուծությունը, տեխնիկական արժեքավոր կուլտուրաները՝ բամբակը, ծխախոտը, ճակնդեղը, եթերատու կուլտուրաները լայնորեն զարգացնելու միջոցով:

Ալպիական հարուստ արոտավայրերի ռացիոնալ օգտագործումը և կերային ամուր բազան նպաստել են անասնապահության զարգացմանը, որը հնարավորություն է տվել երկու և կես անգամ ավելացնելու խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը և համարյա երեք անգամ՝ մանր եղջերավոր անասունների գլխ-

փոքրանալը։ 25 տարում ռեսպուբլիկայի ցանքատարածությունները ընդարձակվել են հինգ անգամ, մեկ հեկտարից ստացվող բերքը ավելացել է երկու անգամ։

Գյուղատնտեսության այս հաջողությունները հնարավոր դարձան գյուղատնտեսության կոլեկտիվացման ստալինյան պլանը լայնորեն կենսագործելու հետևանքով։ Հենց անտեսության կոլեկտիվ ձևը հայ գյուղացուն դուրս բերեց այն աղետավոր, աղքատիկ կացությունից, որի մեջ նա գտնվում էր առաջ։

Սովետական ժողովրդի մեծ առաջնորդները Լենինը և Ստալինը սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից Հայաստանի կոմունիստների և աշխատավորության առաջ խնդիր դրեցին՝ ամեն կերպ օգտագործել ռեսպուբլիկայի հիդրոէներգետիկ ռեսուրսները։ Հայաստանի բոլշևիկները եռանդուն կերպով ձեռնամուխ եղան այդ ցուցումների իրագործմանը։ Կառուցվեցին մի շարք հիդրոէլեկտրոկայաններ, որի հետևանքով Հայաստանի էներգետիկ ռեսուրսները մեկ ու կես միլիոն կիլովատից աճեցին մինչև ավելի քան 700 միլիոն կիլովատ։



Մշակվեց էներգետիկ ամենահետաքրքրական պրոբլեմներից մեկը՝ ծովի մակերևույթից 2 հազար մետր բարձրության վրա գտնվող Սևանի լճից դուրս եկող ջրով աշխատող էլեկտրոկայանների կասկադի կառուցումը։ Այդ կասկադից արդեն կառուցված է մեկ կայան՝ Քանաքեռի հիդրոկայանը՝ մոտ 100 հազար կիլովատ կարողությամբ, ավարտվում է լճային երկրորդ ստորերկրյա կայանի շինարարությունը՝ 25 հազար կիլովատ կարողությամբ և սկսված են Գյումուշի հզոր հիդրոկայանի շինարարության իրագործման նախապատրաստական աշխատանքները։

Էներգետիկ բազայի ստեղծումը նպաստեց Հայաստանում ժամանակակից արդյունաբերության՝ գունավոր մետալուրգիայի, քիմիական, ռետինի, մետաղամշակման, սննդի, տեքստիլ և այլ ճյուղերի զարգացմանը։ Եթե քառորդ դար առաջ ար-

դյունաբերության արտադրանքը կազմում էր ժողովրդական տնտեսության ընդհանուր բալանսի 23,7 տոկոսը, այժմ այն կազմում է 80 տոկոս՝ գյուղատնտեսության արտադրանքի մշակման աճման պայմաններում:

Լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործումը հնարավորություն տվեց անցնելու ազգային կադրեր և որակյալ աշխատողներով ապահովելու գյուղատնտեսության, արդյունաբերության, գիտական ու կուլտուրական հիմնարկությունների և պետական ապարատի պահանջները:

Մեծ հաջողություններ են ձեռք բերված հայ ժողովրդի կուլտուրայի զարգացման բնագավառում: Կուլտուրական հարուստ ժառանգության ճիշտ գնահատումը, անցյալի կուլտուրայից ամբողջ արժեքավորի խնամքով հավաքումը ամուր հիմք հանդիսացան Սովետական Հայաստանի ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի այսօրվա բուռն ծաղկման հա-



մար: Կուլտուրական ժառանգության գնահատման այդ միակ ճիշտ քաղաքականությունը պարտիան իր շուրջը համախմբեց հին ինտելիգենցիայի լավագույն ուժերին և բոլոր հնարավորություններն ստեղծեց երիտասարդ գիտական և կուլտուրական կադրերի պատրաստման ու աճեցման համար:

Հայաստանում սովետական իշխանության հաստատման առաջին իսկ տարիներին ժողովրդական լուսավորության ասպարեզում շեշտը դրվեց անգրագիտության վերացման վրա: 25 տարվա ընթացքում բնակչության միջից անգրագիտությունն իսպառ վերացվեց: Մյուս կարևոր միջոցառումը յոթնամյա պարտադիր կրթության մտցնելն էր: Այժմ Հայաստանում կա 869 տարրական ու թերի միջնակարգ և 300 միջնակարգ դպրոց, 48 տեխնիկում, 13 բարձրագույն ուսումնական հաստատություն:

Չտեսնված թափ ստացավ գիտահետազոտական աշխատանքը: Սովետական Հայաստանում գործում են

43 գիտա-հետազոտական կազմակերպություն և ինստիտուտ, իրենց կենտրոն ունենալով Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիան: Հայաստանի բարձրագույն ուսումնական հաստատություններում ինչպես գիտական աշխատանքի, այնպես էլ գիտական կադրերի ու մասնագետների պատրաստման գործի բարձր մակարդակն է ցույց տալիս ամբողջ Սովետական Միության մեջ կարևորագույն տեղամասերում աշխատող հարյուրավոր բարձրորակ հայ մասնագետների առկայությունը:

Հայ ժողովրդի գրականությունը միշտ էլ բովանդակության խորության և մտքի հարստության հռչակ է վայելել: Վերջին տարիներին Հայաստանի սովետական գրողները, հենվելով ժողովրդի գրական տրադիցիաների վրա, ամեն կերպ զարգացնում էին Հայաստանի նոր գրականությունը, որը լուսաբանում է սոցիալիստական շինարարության հերոսիկան և սովետական հայրենասիրության բարձր զգացմունքները:



Գունազեղ ու բազմակերպ զարգանում է Սովետական Հայաստանի արվեստը: Տաղանդների զարգացման համար սովետական իշխանության ստեղծած բարենպաստ պայմանները իրենց արդյունքներն են տվել արվեստի գրեթե բոլոր ասպարեզներում՝ երաժշտության, նկարչության, քանդակագործության մեջ, թատրոնում: Ստեղծագործական և կատարողական բազմաթիվ կադրերը նոր աստիճանի են հասցրել հայ ժողովրդի արվեստը: Հայաստանի երաժշտական և դրամատիկ թատրոնները իրենց բեմադրություններով առաջ են քաշվել Սովետական Միության առաջավոր թատրոնների շարքը:

Կուլտուրայի, արդյունաբերության, գյուղատնտեսության և ազգային գիտության ամրապնդման ասպարեզում սովետական իշխանության 25 տարիների ընթացքում Հայաստանի ձեռք բերած հաջողությունները վառ ապացույց են, որոնք հաստատում են լենինյան-ստալինյան ազգային· քաղաքակա-

ցության իմաստնությունը և սովետական բանակի հաղթանակը:

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ Սովետական Միության փառավոր հաղթանակով ավարտված Հայրենական մեծ պատերազմը և ճապոնական ագրեսորների դեմ մղված պայքարը մեծ քննություն հանդիսացան սովետական բոլոր ռեսպուբլիկաների համար: Հայ ժողովուրդը եղբայրական բոլոր ժողովուրդների համագործակցությամբ և ռուս ժողովրդի գլխավորությամբ պատվով բռնեց այդ քննությունը:

Հայ ժողովուրդը, որն անցյալում ենթարկվել է թշնամիների շատ արշավանքների, պարզ պատկերացնում էր մեր Հայրենիքի վրա կախված սարսափելի սպառնալիքը և իր բոլոր ուժերով ու հնարավորություններով ակտիվորեն մասնակցում էր երկրի պաշտպանությանը: Ժողովրդի մարտական ավանդները օգնեցին բազմաթիվ մարզված կադրեր տալու Կարմիր Բանակին: Բավական է ասել, որ Կարմիր Բանակի շարքերում կռվում էին ավելի քան



50 հայ գեներալ, 42 հազար մարտիկներ պարգևատրված էին կառավարական մարտական շքանշաններով ու մեդալներով, մոտ 100 մարդ արժանացել էին Սովետական Միության Հերոսի բարձր կոչմանը: Հայկական 89-րդ եռակի շքանշանակիր Թամանյան դիվիզիան Կովկասյան լեռներից մարտերով անցավ մինչև հիտլերյան որջը և մասնակցեց Բեռլինի վրա կատարված գրոհին:

Ոչ պակաս հերոսությամբ և անձնազոհությամբ Հայաստանի աշխատավորները աշխատում էին թիկունքում՝ արդյունաբերության ու գյուղատնտեսության մեջ, ժամանակին կատարելով ռազմաճակատի բոլոր պահանջները: Նրանք միաժամանակ շարունակում էին կառուցել ու զարգացնել ռեսպուբլիկայի տնտեսությունը, պատրաստվելով լայնորեն մասնակցելու հետպատերազմյան խաղաղ ժամանակաշրջանի՝ Սովետական Միության հզորության հետագա ուժեղացման և աշխատավորական մասսաների բարեկեցության

բարձրացման ժամանակաշրջանի վիթխարի աշխատանքներին։

Մենք կարող ենք գոհունակությամբ նշել, որ հիտլերյան զավթիչների դեմ պայքարի դուրս եկան ո՛չ միայն Սովետական Հայաստանի աշխատավորները, այլև արտասահմանում գտնվող հայերը։ Նրանք նույնպես հանդես եկան ի պաշտպանություն Սովետական Միության, և գերմանական ֆաշիզմի դեմ անձնվիրաբար կռվում էին ինչպես դաշնակիցների բանակների շարքերում, այնպես էլ գերմանացիների զավթած եվրոպական երկրների՝ Ֆրանսիայի, Հարավսլավիայի, Հունաստանի և այլ երկրների պարտիզանական ջոկատներում։ Հայրենական Մեծ պատերազմի կրակի մեջ կոփվեց ամբողջ աշխարհով մեկ սփռված հայ ժողովրդի միասնությունը և նրա համախմբվածությունը Սովետական Հայաստանի շուրջը, մեծ առաջնորդ ընկեր Ստալինի շուրջը։ Վերացվեց գոյություն ունեցող խզումը, որը երկար ժամանակի ընթացքում հրահրվում էր հակասովետա-



կան թշնամական ուժերի կողմից։ Հայաստանի աշխատավորները ուրախությամբ սպասում են արտասահմանյան երկրներից իրենց եղբայրների վերադարձին դեպի իրենց հայրենիքը՝ Սովետական Հայաստան։

Հանրագումարի բերելով սովետական 25 տարիների ընթացքում ընկեր Ստալինի անմիջական ղեկավարությամբ և ամենօրյա օգնությամբ հայ ժողովրդի ազգային կուլտուրայի ու պետականության վերածնման և ծաղկման անցած պանծալի ուղին, կարելի է բերկրանքով արձանագրել, որ հայ ժողովուրդը բազմադարյա ճնշումից և տառապանքից հետո առաջին անգամ սովետական մեծ ընտանիքում գտավ ազատություն, խաղաղ, բերկրալի կյանք և վստահորեն քայլում է դեպի լուսավոր ապագան։

(«ՊՐԱՎԴԱ», 25 նոյեմբերի 1945 թ.)

